# ԾԵՐ ԱՆՏԱՌԱՊԱՀԻ ԼԵԳԵՆԴԸ



Նկ. ԱՐԱՐԱՏ ԽԱՆՋԱԴՅԱՆԻ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Անտառում նորից մթնեց, նորից սաստկացավ սառնամանիքը: Գիշեր էր: Ձյունոտ բլրի վրա եղևնիներով շրջապատված տնակում մարեցին լույսերը: Միայն ննջասենյակում, գիշերալույսի տակ, մահճակալներին խոր քնած էին տղաները: Ցերեկը մարզիչ Պալյանը նրանց «քշել» էր ամբողջ տասնհինգ կիլոմետր, և ընթրիքին նրանք հալածող շան պես հոգնած էին:

Վերջապես պատի ժամացույցը զարկեց կեսգիշեր: Սեթը դարձավ, ձեռքը պարզեց հարևան մահճակալին քնած Արմենին:

— Ե՛լ, ժամանակն է,— շշուկով ասաց նա:

Հագնվեցին անձայն. ննջասենյակում տղաների խաղաղ շնչառության ձայնից բացի, ուրիշ ոչ մի շշուկ չկար: Պատշգամբում պատին հենած դահուկների միջից նրանք ջոկեցին իրենցը և աստիճաններով ցած իջան: Երկու հարյուր մետրի չափ նրանք բլրալանջով ցած սահեցին ծանոթ հետքով և ապա թեքվեցին անտառից մի կողմ, դեպի ընդարձակ, կապտավուն ձյունով ծածկված հովիտը:

— Նա հիմա գնացած կլինի,— ասաց Արմենը:

Քիչ անց նրանք տաքացան և վազում էին կողքկողքի: Ամայի հարթությունից վերև մթին անտառն էր: Իջան գետի մոտ, շրջանցեցին մի փոքրիկ դարավանդ և դուրս եկան հին, լքված ջրաղացի մոտ: Ներսում ծերուկը քարին նստած, խարույկի առջև ննջում էր:

— Իսկ ինձ թվում էր, թե արդեն ուշ է և արդեն լուսանում է,— ասաց նա արթնանալով,— ծերացել եմ, քունը հաղթում է:

Տղաները ուսեցին պարկերը և ճանապարհ ընկան: Հասան բացատը, անցան սառած գետը, և անտառը այս տեղերում անտանելի խիտ էր: Ծերուկը վարանեց, ցույց տվեց մթության մեջ.

— Երեկ այնտեղ երկու աղվես պատառոտել էին մի նապաստակի: Իսկ այս ծառի վրա երկու տարի բնակվեց սարյակների մի ընտանիք: Այս տարի նրանք չերևացին: Ինչ եղան, չգիտեմ:

Զարմանալի էր, թե ինչպիսի դյուրությամբ մթին անտառում ծերուկը կարողանում էր ճանապարհը գտնել:

Ծերուկի խրճիթը կորած էր անտառի ամենախիտ մասում: Լուսամուտում լույս էր վառվում: «Պահավս դեռ արթուն է»,— ասաց նա: Նավթի լամպով լուսավորված փոքրիկ սենյակում հազիվ տեղավորվում էին երկու մահճակալ, սեղանը, երեք աթոռ: Պատից կախված էր մի հին հրացան, թանկարժեք փայտի շրջանակի մեջ՝ անտառի բավական տպավորիչ պատկեր:

Աղյուսե ցածրիկ վառարանի մեջ հաճելի վառվում էր կրակը. վառարանի վրա դրված էին թեյաման, ամաններ:

— Դե՛հ, պառավս,— ասաց ծերուկը,— հյուրասիրի՛ր մեզ տաք թեյով, մենք ցրտից ենք գալիս: Սրանք իմ լավ բարեկամներն են: Այնտեղ պարկերում որևէ լավ բան կճարես:

— Դու գիտե՞ս, թե սրանք ովքեր են,— ասաց ծերուկը պառավին:— Սրանք նախանցած օրը ինձ օգնեցին վառելափայտը տուն բերելիս, իսկ այսօր, եթե չհանդիպեին, ես մթերքը հավանաբար վաղն էլ տուն չէի հասցնի: Սրանք իմ լավ բարեկամներն են:

— Ծերուկ,— ասաց Արմենը,— դու քանի՞ տարեկան ես;

— Յոթանասուն,— ասաց ծերուկը,— դրանցից քառասունհինգ տարին ապրել եմ անտառում:

Ծերուկը վառեց ծառի ճյուղից սարքված երկար ծխամորճը:

— Հին գյուղից մարդկանց հանեցին,— ասաց ծերուկը,— մարդկանց հանեցին. գետը ամբարտակով կըփակեն, տեղում լիճ կլինի:

— Իսկ ինչի՞ համար է լիճը,— հարցրեց Սեթը:

— Պարզ բան է,— ասաց ծերուկը,— հանգստյան տներ կշինեն, մարդիկ կգան անտառային լճում հանգըստանալու, կշնչեն անտառի օդը: Անտառը մարդկանց համար է:

Ցուրտը նախշել էր փոքրիկ խրճիթի պատուհանը. դրսում սառնամանիք էր: Իսկ ներսում աղյուսե ցածրիկ վառարանի մեջ բոցկլտում էր կրակը: Տղաները խմում էին տաք, հաճելի թեյը:

— Իսկ հիմա ես կպատմեմ մի շատ հետաքրքիր ու իսկական պատմություն,— ասաց ծերուկը:

— Ժամանակով բարձր սարերի արանքում, անտառների մեջ կորած մի գյուղ կար: Աշխարհից կտըրված գյուղ էր: Երբ պատերազմ էր լինում, այդ գյուղի մարդիկ մի տարի հետո էին իմանում: Թշվառ էին ապրում մարդիկ: Անտառը հարուստ էր, հողը՝ բերրի, մարդիկ աշխատում էին կլոր տարին և ստացածը նըրանց ձեռքից խլում էին գյուղի կեղեքիչ հարուստները: Հողն էլ, անտառն էլ, ջուրն էլ նրանցն էր, այդ հարուստներինը: Իսկ նրանց պաշտպանում էին մաուզերիստ դաշնակները:

Զլունոտ անտառում ցո՜ւրտ-ցուրտ էր: Պառավ Փառեն նորից լցրեց բաժակները, տղաներին հյուրասիրեց քաղցրաբլիթով:

— Եվ ահա, այդ գյուղում,— պատմում էր ծերուկը,— մեծացավ Կարո անունով մի երիտասարդ: Գյուղի տավարն էր արածեցնում Կարոն, բայց խելացի էր, մտածում էր. ինչո՞ւ է ժողովուրդը վատ ապրում: Եվ մտածում էր. հապա գնամ շրջեմ մնացած աշխարհում, հարցնեմ մարդկանց և տեսնեմ, թե ով ինչ կասի: Վերցըրեց Կարոն ուսապարկը, մի կլոր հաց գցեց մեջը ու ճանապարհ ընկավ: Շատ ճանապարհներ կտրեց, շատ երկրներ անցավ, շատ քաղաքներում եղավ և վերջապես մի ամայի տեղ, ճամփաբաժանում հանդիպեց մի ճերմակամորուս ծերունու...

Անտառում ինչ-որ տեղ ծառերի տակ անաղմուկ անցնում էր գայլը, ինչ-որ տեղ նապաստակը աղվեսի հետապնդումից փախչելով իրեն գցեց թավուտը:

Պատմեց Կարոն ծերունուն ամեն ինչ, և ծերունին ասաց. «Տեսնո՞ւմ ես այս ճանապարհը, տանում է դեպի հյուսիս: Կգնաս այս ճանապարհով և կգտնես քեզ հուզող հարցի պատասխանը»: Գնաց Կարոն հյուսիսի ճանապարհով, գնաց, շատ քաղաքներ անցավ, շատ ժողովուրդներ տեսավ և վերջապես հասավ ամենամեծ քաղաքը: Իսկ այդ քաղաքում ապրում էին բոլշևիկները, աշխարհի ամենաարդարացի ու ամենաճշմարտասեր ժողովուրդը: Նայեցին նրանք Կարոյին, հասկացան, որ եկվոր է, հարցուփորձ արեցին, հասկացան նրան և ասացին. «Մենք քեզ կտանենք մեր ամենամեծ առաջնորդի մոտ, և նա քեզ ամեն ինչ կասի»:

Լիալուսինը ծառերի վերևներում թաքնված ինչ-որ տեղից լուսավորում էր ձյունոտ անտառը, և շուրջը հազարավոր հեքիաթային պատկերներով անտառը խաղաղ էր: Անտառում ցրտից ոչ ոք չէր տրտնջում:

— Իսկ բոլշևիկների ամենամեծը շատ զբաղված էր,— պատմում էր ծերուկը,— աշխարհի բոլոր մարդկանց գործերն էր վճռում: Իմացավ, որ Կարոն եկել է շատ հեռվից, ասաց. «Հապա կանչե՛ք նրան ինձ մոտ»: Եկավ Կարոն նրա մոտ, իսկ նա մի հասարակ սենյակում էր ապրում և ինքն էլ շատ հասարակ մարդ էր: Նստեց Կարոն նրա մոտ և պատմեց նրան անտառային հեռավոր գյուղի բոլոր հոգսերի մասին: Լսեց բոլշևիկների ամենամեծը Կարոյին, ուշադիր, և ասաց. «Ա՛յ, թե ինչ կասեմ, Կարո՛, ձեզ մինչև այսօր կեղեքել, խաբել են. հողը, ջուրը, անտառը բոլոր մարդկանցն են, և բո-





լոր մարդիկ պիտի օգտվեն հավասարապես: Գնա՛ ձեր գյուղը, պատմի՛ր մարդկանց այդ մասին, կռվի՛ հանիր նրանց կողոպտիչների, կեղեքիչների դեմ, դուք շատ եք, կհաղթեք և արդարությո՛ւն կհաստատեք: Ուրիշ կերպ երկրի վրա արդարություն չի լինի»:

Անտառի ամենահեռավոր խորքում տաք որջի մեջ արջը մի կողքից մյուս կողքին շրջվեց, քնի մեջ տընքաց ու շարունակեց լիզել թաթը. արջին թվաց, թե արդեն գարուն է և ինքը արևկող լանջին մոշի թփերի մոտ անուշ է անում քաղցրահամ պտուղը:

— Ելավ Կարոն, սեղմեց բոլշևիկների ամենամեծի ձեռքը,— շարունակեց պատմել ծերուկը:— «Շնորհակալ եմ,— ասաց,— քո խորհուրդը ինձ շատ դուր եկավ»,— և դուրս ելավ: «Դե՛, եղբայր,— ասացին նրան բոլշևիկները,— հիմա գնա քո երկիրը և վարվիր այնպես ինչպես խորհուրդ տվեց մեր ամենամեծ առաջնորդը»: Եվ ճանապարհ դրեցին նրան մինչև կայարան: Իսկ կայարանում, հրաժեշտի ժամանակ Կարոն հարցրեց նրանց. «Իսկ ի՞նչ էր ձեր առաջնորդի անունը»: «Լենին»,— ասացին բոլշևիկները, և Կարոն մտքում պահեց այդ անունը՝ «Լենին»:

Պառավ Փառեն սնդուկի վրա նստած՝ շյուղերով գործում էր: Թըվում էր, թե գիշերային ձյունոտ անտառի ամբողջ մեծ լռությունը լցվել էր փոքրիկ սենյակը, և այդ մեծ լռության մեջ պարզեպարզ լըսվում էր, թե ինչպես պառավի ձեռքերում շյուղերը խաղաղ շրշում են:

— Եկավ Կարոն իրենց գյուղ, հավաքեց մարդկանց և պատմեց Լենինի մասին, և այն մասին, թե ինչ խորհուրդ տվեց Լենինը: Եվ հենց նույն գիշեր գյուղի մարդիկ ապստամբեցին, հրդեհեցին հարուստների տները, հարուստներին վռնդեցին գյուղից, ստեղծեցին իրենց իշխանությունը: Բայց դա երկար չտևեց. գնացին գյուղի հարուստները, խաբեբաներն ու կեղեքիչները, ուկով կաշառեցին դաշնակների խմբապետին, և դաշնակները գիշերը, մաուզերներով, գաղտագողի մտան



## ԼԵՆԻՆ

ՄՈՎՍԵՍ ՅԱԽՃԱՆՑ

Այսօր մանկիկն իմ պայծառ՝
Իր շուրթերով ծաղկաբույր
Արտաբերեց մի նոր բառ.
Նվիրական, սրտաբուխ:
— Լե-նի՛ն,—
Նա թոթովեց վանկ առ վանկ:
—Լենի՛ն,—
Կրկնեց նա պարզ ու հստակ:
—Լենի՛ն, Լենի՛ն,—
Արտասանեց այս անգամ
Սրտապնդված ու վստահ:
Թովում է նա կայտառ՝
Աչքերի մեջ խոր հրճվանք.
Որ կատարեց իր համար
Մի նոր թռիչք ու սխրանք:

գյուղը, բռնեցին բանտարկեցին ապստամբներին և Կարոյին էլ խոր նկուղը գցեցին։

Տղաները վերջացրել էին թեյելը։ Ծերուկը պատմում էր անշտապ, երբեմն-երբեմն շուրթերին մոտեցնելով ծխամորճը, մտածելով, և այդպիսի պահերին թվում էր, թե այն, ինչ պատմում էր նա, շատ վաղուց չպատմված պատմություն էր և աչքերը կկոցած, ծխելով, ծերուկը մտաբերում էր մանրամասները.

— Բայց մարդիկ չլքեցին Կարոյին։ Նրանք գիտեին, որ Կարոն իրենց ամենալավ բարեկամն է։ Գիշերը կոտրեցին նկուղի դուռը և ազատեցին նրան։ Առավ Կարոն իր սիրած աղջկան ու միասին փախան հեռավոր ու խուլ անտառները։ Այնտեղ նրանք տնակ շինեցին, ամուսնացան ու միասին ապրեցին այդ խըրճիթում։

Անտառում ամեն ինչ կարծես զգում է գիշերվա կեսը. այդ ժամին մարում է ամեն մի շարժում, ամեն մի շշուկ, ամեն ինչ վերադառնում է իր բնական տեսքին. ծառերն այլևս նրբահասակ գեղեցկուհիներ չեն և ձյունե ծածկոցը ամենևին էլ շրջազգեստ չէ. անտառը կարծես ավարտում է կեսգիշերային իր պարահանդեսը և ցերեկվա կյանքին վերադառնալուց առաջ ննջում է։

— Շուտով գյուղում ամեն ինչ փոխվեց.եկան հյուսիսի կողմի բոլշևիկները, քշեցին գյուղից կեղեքիչ ու խաբեբա հարուստներին և նրանց պաշտպան դաշնակներին, հողը, անտառը ու ջուրը բաժանեցին բոլոր մարդկանց միջև հավասար, և մարդիկ հիմա ապրում




էին գոհ ու երջանիկ։ Ասացին նրանք Կարոյին. «Հիմա մարդկանց միջև արդարություն է տիրում, մնա՛ մեզ մոտ, ապրի՛ր մեզ հետ», և նրան հող խոստացան, խոստացան նոր խրճիթ շինել։ Իսկ Կարոն գյուղում արդեն չէր կարող ապրել։ «Ես, բարեկամներ,— ասաց նա, արդեն սովորել եմ անտառին. ես կգնամ անտառ, կը-

— Ինչքան լա՛վ է, իմ բալի՛կ,
Որ այդ բառը դու գտար
Եվ այդ բառը խնդալից
Քո բառաշխարհը մտավ։

Բայց դա բառ չէ հասարակ,
Թոթովախո՛ս իմ մանուկ,
Այլ դրոշ է փրկարար,
Աշխարհացունց մի անուն,
Որ ուղեցույց դարձավ մեզ
Ու բարություն՝ մեզ համար,
Պարզ ու հստակ լույսի պես
Ու լույսի պես կենարար։

Ինչքա՛ն, ինչքա՛ն այս կյանքում
Զրկանք ու ցավ նա կրեց,
Մինչ ձեռքերով իր մաքուր
Լուսե բախտը մեր կռեց։

Նա տվեց մեզ որպես տուն
Ու հայրենիք՝ հավիտյան,
Թռիչքի մեջ մի աշխարհ՝
Արաքսից մինչ Բերինգյան։

Ինչ որ լավ է, անբասիր,
Գեղեցիկ ու մարդկային՝
Ե՛վ սխրանքը հերոսի,
Ե՛վ թռիչքը աստղային,
Խիզախումներ անձնուրաց,
Երազանքներ թևավոր,
Ե՛վ արտեկներ կենսուրախ,
Ե՛վ պալատներ փառավոր՝
Այն ամենը լուսավոր,
Որ պիտ ապրի հավիտյան,
Շնորհակալ մի սիրով
Մենք կոչում ենք լենինյան։

Լսի՛ր ուշիմ, իմ անգին,
Որպես պատգամ ու երդում,
Լսի՛ր, որպես սրտագին
Ամենամեծ սրբություն,
Արտասանիր դու կյանքում՝
Բարձրաձայն թե մտովին,
Շրթունքներով միշտ մաքուր
Հրաշունչ բառը՝ Լենին։

Արտասանի՛ր, նորից նոր
Թող ծավալվի այս համայն
Աշխարհով մեկ, լայն ու խոր
Երկնքի պես անսահման
Մի լենինյա՛ն պարզություն,
Մի լենինյա՛ն ջերմություն,
Մի լենինյա՛ն թարմություն
Եվ լենինյա՛ն մաքրություն։

Նկ. ՖՐԵՆԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

պահպանեմ անտառը և ամեն ամիս ձեզ մոտ հյուր կգամ»: Այն օրվանից Կարոն մնաց անտառի իր տնակում, իր սիրելի կնոջ հետ և պահպանեց անտառը: Հանդիպում էին մարդիկ, բարևում էին հարգանքով, իսկ երբ նա մարդկանց մոտ հյուր էր գնում, նրան ընդունում էին պատվով: Եվ այդպես, Կարոն իր կնոջ հետ քառասունհինգ տարի ապրեց անտառում, քիչ չէ, հը՞, քառասունհինգ տարի...

Ծեր անտառապահը ավարտեց իր պատմությունը: Արդեն ուշ էր, և նրա փայտե ծխամորճն էլ արդեն մարել էր: Պառավ Փառեն մի կողմ դրեց ձեռագործը և սկսեց հավաքել սեղանը: Ծերուկն ու իր կինը դուրս եկան նրանց ճամփու դնելու: Նրանք երկար կանգնած մնացին բաց դռան առջև, մինչև տղաները անտառապատ լանջով սահեցին ներքև և անհետացան ծառերի ետևում:

Առավոտյան մարզիչ Պալյանը իր սաներին մարզումների հանելիս վերջին երկու մահճակալների մոտ հատկապես երկար հորդորեց:

— Սե՛թ, Արմե՛ն,— ասում էր մարզիչը,— արթնացե՛ք, վերջապես: Այս ի՛նչ բան է, ոչինչ չեմ կարողանում հասկանալ, վերջին օրերին նրանք բոլորովին ծուլացել են...




ՀԱՆՐԻ ԶԱՐՅԱՆ

Նա սովորում է մեր դասարանում, բայց ընկերություն է անում... երրորդ «բ» դասարանի Ծիպուկի հետ. դասերից հետո սպասում են իրար ու միասին գնում են...

Մյուս օրը ուշացած է գալիս դասի: Հարցնում են՝ ինչո՞ւ ես ուշացել, չի պատասխանում: Այսինքն, ավելի ճիշտ, պատասխանում է, բայց՝ կարճ:

— Էլ չեմ ուշանա,— ասում է ու նստում:

Բայց էլի ուշանում է. նույնիսկ հանրահաշվի ու երկրաչափության դասերից է ուշանում: Մենք մտածում ենք, որ նա, երևի, ոչ մի բանից վախ չունի կամ ինչ-որ արտասովոր բան է կատարվում նրա հետ... Արտաքինը սովորական է. երկար, նիհար մարմին, ձվաձև դեմք, շագանակագույն աչքեր ու բիկ-բիկ մազեր:

Իսկ մի քանի օր առաջ նա այնպիսի տեսքով մտավ դասարան, որ ես մտածեցի.

«Նրա հետ հաստատ ինչ-որ արտասովոր բան է կատարվում»...

Դարձյալ ուշացած մտնում է դասարան՝ ոտքից-գլուխ թրջված: Եվ մեր հանրահաշվի ու երկրաչափության դասատուն կլորացնում է աչքերը.

— Ուրեմն, հիմա էլ թրջվա՞ծ ես գալիս իմ դասին: Որտե՞ղ ես թրջվել. երկնքում ամպի կտոր չկա:

Նա հանգիստ ասում է.

— Ավազանի մեջ:

— Հա՛, ավազանի մե՞ջ:

— Այո՛, վազում էի, առաջս չէի նայում ու ընկա:

— Ուրեմն, վազո՞ւմ էիր: Իսկ ինչո՞ւ էիր վազում:

— Որ դասից չուշանամ:

— Ուրեմն, չէի՞ր կարող մի քիչ շուտ արթնանալ:

Բայց նա այլևս ոչինչ չի ասում. նստում է ու լռում:

Երեկ էլ ուշացած մտավ դասարան՝ դեմքը, քիթն ու ձեռքերը ճանկռված:

— Ուրեմն, հիմա էլ կատուների հե՞տ ես կռվի բռնվում,— ասում է դասատուն:

— Ո՛չ,— հանգիստ պատասխանում է նա,— բարձրացել էի ծառը...

— Հա՛, բարձրացել էիր ծա՞ռը:

— Այո՛:

— Իսկ ինչո՞ւ էիր բարձրացել ծառը:

Նա այլևս ոչի՛նչ չի ասում. միայն ուսերն է թափ տալիս: Դասատուն ավելի է ոգևորվում:

— Ուրեմն, չե՞ս ուզում խոսել: Պարզ է... Նստի՛ր:

Նստում է: Մենք վստահ ենք մեկ, որ չծիծաղենք, որովհետև մեր հանրահաշվի ու երկրաչափության դասատուի դեմքը շատ է սպառնական, ամեն րոպե կարող է որևէ մեկիս գրատախտակի մոտ կանչել...

Հետո մտածում եմ.

«Գուցե հենց իր ընկերը՝ Ծիպո՞ւկն է նրան ճանկռել»,— և չեմ կարողանում ծիծաղս զսպել:

Դասատուն բարկությունը թափում է վրաս.

— Ուրեմն, համարձակվում ես ծիծաղե՞լ իմ դասին: Պարզ է... Դո՛ւրս:

Իսկույն դուրս եմ գնում: Մեր հանրահաշվի ու երկրաչափության դասատուի հետ եթե վիճում ես՝ վերջը շատ վատ է լինում· մանավանդ, որ նրա համար ամեն բան պարզ է:




*

* *

Իսկ այսօր նա՝ ծառը բարձրացող տղան, ուռած կարմրած դեմքով է մտնում դասարան, բիզ-բիզ մազերն էլ՝ գզգզված:

— Ուրեմն, այսօր էլ քիթ ու մռութդ քուֆթա՞ են սարքել,— հեգնում է դասատուն:

— Այո,— հառաչում է նա:

Դասարանը կարեկցական նայում է նրան: Ես էլ մի տեսակ տխրում եմ, որ նա հառաչում է, որովհետև առաջին անգամն եմ տեսնում նրան հառաչելիս:

— Ովքե՞ր են,— հարցնում է դասատուն:

— Ոչ ոք,— ասում է նա:-- Ընկա:

— Հա՛, ընկա՛ր:

— Այո՛:

— Որտե՞ղ ընկար:

— Փողոցում. փոսի վրայի կափարիչը չէին ծածկել, ու 'ընկա...

— Ուրեմն, կափարիչը չէին ծածկել, ու ընկա՛ր: Դե, եթե չես ուզում ճիշտն ասել, երևի՝ համարելով դա խաբարբզանությո՛ւն, ուրեմն, նստիր,— ասում է դասատուն, մոտենում է գրատախտակին, վերցնում կավիճն ու սկսում է նոր բանաձև գրել:

Բայց դասարանը ոչ թե գրատախտակին է նայում, այլ՝ փոսի մեջ ընկած տղային: Ես էլ եմ նայում նրան. շա՜տ խղճալի տեսք ունի: Պարզ երևում է, որ ոչ թե փոսի մեջ է ընկել, այլ՝ մի որևէ տհաճ արկածի... Բաց է անում պայուսակը, միջից գիրք է հանում, թաքուն կարդում է: Նա խոսել չի սիրում, բայց կարդալ սիրում է, մանավանդ՝ արկածային գրքեր...

Որոշում եմ.

«Դպսամիջոցին Ծիպուկին կհարցնեմ, թե նա ումի՞ց է ծեծ կերել: Թե չէ ինչպե՞ս կարելի է այդպես արկածի մեջ ընկնել ու ոչ ոքի ոչինչ չասել...»

Հանկարծ դասարանում լռություն է տիրում: Ընթափվում եմ, շուռ գալիս ու տեսնում, որ դասատուն վերջացրել է իր նոր բանաձևը և կանգնել է նրա գլխավերևում: Դասարանը պապանձվել է վախից: Իսկ նա՝ գիրք կարդացող տղան, իր տարերքի մեջ է: Եվ դասատուն նույնպես ընկնում է իր տարերքի մեջ, այսինքն, սկսվում է մեր հանրահաշվի ու երկրաչափության դասատուի ամենաերկար ու ամենասպառնալից մենախոսությունը.

— Ուրեմն, հիմա էլ արկածայի՛ն գրքեր ես կարդում... Փակի՛ր իսկույն այդ հիմար գիրքը... Գուցե



կբարեհաճեիք գնալ գրատախտակի մո՞տ, արկածասեր տղա: Չե՞ք բարեհաճում: Ո՞վ է ուզում գնալ գրատախտակի մոտ... Ուրեմն, ոչ ո՞ք: Պարզ է: Ուրե՛մըն... —Զննում է հերթով բոլորին ու վերջում մատն ուղղում վրաս.— Ուրեմն, դո՛ւ կգնաս:

Իսկույն գնում եմ:

— Ուրեմն, գրի՛ր:

Գրում եմ:

— Ջնջի՛ր:

Իսկույն ջնջում եմ:

— Իսկ հիմա, ուրեմն, գրի՛ր. $(a-b)^3$

Ա՜խ, այդ անիծյալ մինուսը: Գրում եմ:



*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

— Հա՛, ուրեմն, $a^3$-ից հետո՝ պլյո՞ւս:

$a^3$-ից հետո գրում եմ մինուս, շուռ եմ գալիս, նայում մեր դասատուին, որի կլորացած աչքերն ուղղակի ծակում են ուղեղս, և վախից «+»-ներն ու «—»-ները լրիվ խառնում եմ իրար:

Դասատուն դիմում է դասարանին.

— Ո՞վ կարող է գրել ճիշտը:

Ոչ ոք ձեռք չի բարձրացնում. բոլորի դեմքերին էլ վախ կա, նույնիսկ՝ գերազանցիկների ու հարվածայինների: Այդպիսին է մեր հանրահաշվի ու երկրաչափության դասատուն. իր «+»-ների ու «—»-ների համար այնպես է կլորացնում աչքերը, որ նույնիսկ գերազանցիկներն էլ սիրտ չեն անում տեղներից վեր կենալ և համարձակ մոտենալ գրատախտակին:

Բայց հանկարծ նա՝ Ծիպուկի քուֆթա դառած ընկերը, որ միշտ ուշացած է մտնում դասարան, վեր է կենում տեղից, մոտենում է ինձ, կավիճն ու բարձիկը վերցնում է ձեռքիցս և գրում: Հետո կավիճն ու բարձիկը տալիս է ինձ ու նորից գնում նստում է իր տեղը:

Գերազանցիկներն ու հարվածայինները կամացուկ իրար ասում են, թե՝ իրենք էլ կարող էին գրել ճիշտը և կամաց-կամաց ձեռք են բարձրացնում: Իսկ նա «+»-ներն ու «—»-ները ճիշտ գրող տղան, ոչ մեկին ոչինչ չի ասում. միայն ուռած ու կարմրած դեմքի վրա ժպիտ է երևում մի թեթև: Դասատուի սպառնալից դեմքին էլ ժպիտ է երևում մի թեթև. մեր հանրահաշվի ու երկրաչափության դասատուի դեմքին՝ ժպի՞տ, այն էլ բարի ժպիտ...

*

* *

— Ուրեմն, ոչ ոք չգիտի՞, թե ով է քուֆթա դարձրել մեր արկածասեր հերոսի դեմքը:

Իսկույն ձեռք եմ բարձրացնում:

— Դո՞ւ:

— Ո՛չ,— ասում եմ,—Ծիպուկը:

— Ծիպո՞ւկը:

— Երրորդ «բ» դասարանից է. կանչե՞մ,— ասում եմ:

— Կանչի՛ր,— ասում է դասատուն:

Իսկույն վազում եմ միջանցք ու քիչ հետո մտնում եմ՝ Ծիպուկի հետ, որի դեմքը նույնպես քուֆթայի նման է՝ ուռած ու կարմիր...

Դասատուն ծիծաղում է, տեսնելով Ծիպուկին.

— Ուրեմն, այս Ծիպո՞ւկն է մեր հերոսի դեմքը քուֆթա սարքել:

— Ո՛չ,— ասում է նա՝ հերոսը:— Ծիպուկն իմ ընկերն է. ինչո՞ւ պետք է մենք իրար հետ կռվենք:

— Հա՛, ուրեմն, այս Ծիպուկը քո ընկե՛րն է:

— Այո՛,— հաստատում է Ծիպուկն իր ընկերոջ խոսքը:

Մենք հաճույքից սկսում ենք բզկտել իրար: Դասատուն էլ աշխուժանում է:

— Դե, ուրեմն, Ծիպո՛ւկ, ասա տեսնե՛նք՝ ո՞վ է այսպես այլանդակել ընկերոջդ և քո դեմքը:

— Խուլիգանները,— ասում է Ծիպուկը:

— Իսկ դուք ի՞նչ գործ ունեիք խուլիգանների հետ:

— Մենք ոչ մի գործ էլ չունեինք,— ասում է Ծիպուկը:— Նրանք անմեղ տեղը մեզ վիրավորեցին, մենք էլ չուզեցինք վիրավորանքը կուլ տալ:

— Ուրեմն, չեք ուզեցել վիրավորանքը կո՛ւլ տալ: Ճիշտ եք արել, Ծիպո՛ւկ: Իսկ ինչո՞ւ էր այն օրը ընկերդ թրջված եկել դպրոց:

Ծիպուկն ասում է.

— Մի փոքրիկ երեխա հեծանիվով ընկավ ջուրը. նետվեցինք ու հանեցինք երեխային, որ հանկարծ չխեղդվեր:

— Դա էլ ճիշտ եք արել, Ծիպո՛ւկ, կեցցե՛ս: Իսկ երեկ ո՞վ էր ընկերոջդ ճանկռել. էլի խուլիգաննե՞րը:

— Ո՛չ, բայց էլի խուլիգանների պատճառով եղավ: Մի փոքրիկ



Դասատուն ձեռքը դնում է Ծիպուկի ուսին, ու միասին դուրս են գնում դասարանից: Ես էլ մոտենում եմ նրան՝ Ծիպուկի ընկերոջն, ու ասում.

— Լավ մարդ է, չէ՞, մեր հանրահաշվի ու երկրաչափության դասատուն:

— Ըհը՛,— գլխով է անում նա:

— Ի՞նչ գիրք էիր կարդում դասի ժամանակ,— հարցնում եմ:

Պատասխանում է.

— «Անգլուխ ձիավորը»:

— Իսկ ամենից շատ ո՞ր գիրքն ես սիրում:

— «Երեք հրացանակիրները»:

— Իսկ կինոնկարների՞ց:

— «Հրաշալի յոթնյակը»:

Ու այնպե՜ս են փայլում աչքերը...

կատվի ձուտ էին դրել ծառի վրա. այնպես մեղք էր: Բարձրացանք, իջեցրինք ծառից, թե չէ այնտեղ որ մնար, սովից կսատկեր:

— Պարզ է, Ծիպո՛ւկ, պարզ է...

Եվ նորից հնչում է զանգը:

Հետո դասարան է մտնում մեր լեզվի ու գրականության դասատուն, և նորից սկսվում է դասը: Բայց ես դեռ մտածում եմ նրա մասին՝ մեր դասարանի չխոսկան, բայց քաջ տղայի մասին...

Իսկ մենք՝ ինչքա՜ն ենք սիրում խոսել մեր և՛ կատարած, և՛ չկատարած քաջագործություններից....

# ԽՆՁՈՐԽՈՏԻԿ

ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ

Նորից եկան օրերը տաք,
Բաց արին քո աչքերը փակ,
Կարմիր գլուխ, կանաչ ոտիկ,
Խնձորխոտիկ:

Արևը քեզ խուտուտ բերեց,
Ամպը ցողի մի պուտ բերեց,
Հովը՝ համբույր, հողը՝ խորտիկ,
Խնձորխոտիկ:

Գլուխ ունես խնձորաձև,
Երեք անուն ու երեք թև,
Անուշ ծիծաղ, անուշ հոտիկ,
Խնձորխոտիկ:

Սա՞րը, ծո՞րը, ա՞րտը, առու՞ն,
Ո՞վ քեզ տվեց երեք անուն,
Երեքն էլ իմ սրտին մոտիկ,
Խնձորխոտիկ:

Գլխով արա, թող ինձ մոտիկ,
Նստենք խաղանք սիրի-սիրի,
Տեսնենք ով ում շատ կսիրի,
Իմ երեքնուկ—Սիրի-սիրի—
Խնձորխոտիկ:

Նկ. ԱՐԱՐԱՏ ԽԱՆՋՅԱՆԻ

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ՕԴԱՉՈՒ ԴԱՐՁԱ

ԱՐՄԵՆ ԽՈՍՏԻԿՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՑԱՐԱԼՅԱՆԻ

Մի օր հայրս ուրախ տուն եկավ և ինձ ասաց՝ հագիր նոր շորերդ, այսօր ավիացիայի օրն է:

— Ավիացիա՞...

— Հագնվի՛ր, հագնվի՛ր, գնանք կտեսնես, կառքը դրսում մեզ է սպասում:

Ուրախությունից ճչացի, կառքով պիտի գնա՞նք: Արագ հագնվեցի, մայրիկս օգնեց և ստիպեց, որ անպայման նախաճաշեմ:

— Հայրիկի ձեռքը բաց չթողնես, ուշադիր եղիր, չընկնես, չկեղտոտվես...— մայրիկս էլի ինչ-որ բաներ ասաց, բայց ես վազեցի դուրս:

Մուտքի մոտ, իրոք, մեզ սպասում էր կառքը: Բակի երեխաները հավաքվել էին կառքի շուրջը և հիացած նայում էին ձիերին, իսկ ձիերը շատ լավն էին. սև ձին գլուխն էր օրորում, սպիտակը պոչն էր շարժում: Կառապանը քնած էր: Հայրիկս ուզեց ինձ օգնել, բայց ես ինքս առանց նրա օգնության, մենակ բարձրացա



կառք, մենակ, բոլորը տեսան, իսկ հաստլիկ Վաչոն ինձ հարցրեց.

— Այդ ո՞ւր ես գնում:

— Ավիացիայենց տուն:— Երեխաները զարմացած իրար երես նայեցին ու փոթկացին:

Ես էլ ուրիշ ոչինչ չասացի, կառքը շարժվեց:

— Պապի՛կ, այդ ձիերը չե՞ն կարող վազել,— հարցրի ես կառապանին, նա չպատասխանեց. երևի էլի քնած էր: Իսկ ձիերը հանկարծ պոկվեցին տեղից և վազեցին: Ուռա՛, քաղաքից դուրս եկանք, անցանք այգիների միջով: Ծառերի վրա այնքան մրգեր կային, ճյուղերն էլ քսվում էին մեր կառքին և, թվում էր, որ երևի ձեռքս երկարեմ, անպայման նրանցից մեկնումեկը կպոկեմ, բայց ափսո՛ս, շատ արագ էինք գնում: Քիչ հետո, երբ մենք դուրս եկանք լայն ճանապարհ, ձիերը դանդաղեցրին իրենց ընթացքը, ափսոս, էլ այգիներ չկային, մեր առաջ բացվեց մի մեծ դաշտ:

— Նայի՛ր, նայի՛ր, հայրի՛կ, ինչքա՞ն շատ մարդ կա, կարծես ամբողջ քաղաքը այստեղ է եկել:

— Հասանք, տղա՛ս, իջի՛ր:

— Այս ո՞ւր եկանք:

— Օդանավակայան:

Ուշադրությունս գրավեց երկնքից լսվող դռռոցը, բոլորը վերև էին նայում. թռչող սավառնակներից ինչ-որ բան թափվեց, բոլորը ծափահարեցին:

— Այս ի՞նչ է, հայրի՛կ:

— Մարդիկ են, բալի՛կ ջան:

— Ջարդուփշո՞ւր կլինեն,— գոռացի ես:

— Դրանք պարաշյուտիստներ են:

Ընկնող սև կետերը դարձան կարմիր, կանաչ, դեղին, կարծես երկնքից ծաղիկներ էին թափվում:

Ես ետ նայեցի և մի քանի քայլ հեռավորության վրա տեսա գետնին կանգնած մի սավառնակ՝ մեծ-մեծ, երկու թևանի, մոտն էլ մարդ չկար: Կամաց հայրիկիս ձեռքը բաց թողեցի: Կապված պարանի տակով մոտեցա սավառնակին, ձեռք տվեցի աստիճանին, նայեցի շուրջս, ոչ ոք բան չասաց: Զգույշ բարձրացա վեր, նորից ետ նայեցի. լավ էր, բոլորը նայում էին երկինք, երևի իմ սավառնակը չէին նկատել: Ի՞նչ կլինի, եթե ներս մտնեմ: Մտա, սիրտս այնպես էր խփում, ուրախությունից և վախից շունչս կտրվում էր: Նստեցի օդաչուի աթոռին: Բայց ո՞ւր է կլոր ղեկը: Հա՛, երևի փչացած է, ինչ անենք, որ կլոր ղեկը չկա, բայց հու-

կական սավառնակ է՝ երկու թևանի, ես օդաչու եմ։ Բերնով դռռացնում էի և, թվում էր, որ ես արդեն թռչում եմ։ Մի՞թե կարող է այս մեծ-մեծ սավառնակը օդ բարձրանալ։ Կարո՛ղ է։ Ես շարունակում էի բոբռացնել. ինձ թվաց, որ արդեն անցել եմ ամպերը և հասնում եմ աստղերին։

Հանկարծ լսվեց ոտնաձայն, հետո խոսակցություն։ Ես վեր թռա տեղիցս և թաքնվեցի սավառնակի խորքում։ Վախենում էի շնչել։ Ներս մտավ մի օդաչու, նստեց իմ աթոռին, բայց ոչինչ, հիմա կիջնի, սավառնակը կլոր ղեկ չունի, փչացած է։

— Պաշլի՛,— ասաց օդաչուն։

Այդ ո՞ւմ է ասում, ի՞նձ է ասում...



Սավառնակը ցնցվեց. լսվեց շատ ուժեղ դռռոց։ Կլոր լուսամուտից նայեցի դուրս. այս ի՞նչ է, գլուխս է պտտվում։ Ամեն ինչ սկսեց աչքերիս առջևից փախչել, մարդիկ, ծառերը և տները, ամեն ինչ սկսեց փոքրանալ, տները դարձան արկղների չափ, մարդիկ՝ տիկնիկներից էլ փոքր։ Հետո ամեն ինչ սվաղվեց... չքվեց։ Սա ի՞նչ է, կաթի մեջ ընկանք. ահավոր է, ի՞նչ լավ կլիներ կառք չնստեի. սարսափելի է մենակ մնալ։ Հիմա երեխաները մեր բակում ֆուտբոլ են խաղում։ Քիչ մնաց գոռայի՝ մամա՛, բայց ձեռքովս փակեցի բերանս, երեսս էլ շուռ տվեցի լուսամուտից։ Ինչո՞ւ բաց թողեցի հայրիկիս ձեռքը. տեսնես նա հիմա ի՞նչ է անում, ախր մենք ուրիշ տեղ էինք գնալու։

Սավառնակի ուժեղ ցնցումը ինձ սթափեցրեց. վա՛յ, ընկանք։ Նորից տները, ծառերը, հեռագրական սյուները եկան իրենց տեղերը կանգնեցին։ Այդ ի՞նչ է, հասա՞նք, ո՞ւր եկանք։ Սրբեցի արցունքներս։ Ականջներս ցավում էին, սիրտս՝ խառնում, այլևս չէր լսվում սավառնակի դռռոցը. լռություն էր, հետո ինչ-որ շխկոց, մարդկանց ձայներ։ Արցունքների միջից տեսա հորս գունատ, շփոթ դեմքը։

— Հայրի՛կ,— շշնջացի ես։

— Վա՛յ, բալի՛կս։

Հեկեկացի։ Մարդիկ հավաքվել էին մեր շուրջը, ամեն մեկը մի բան էր ասում.

— Խե՛ղճ երեխա, վախեցել է։

— Բա մարդ հորը երեխա կվստահի՞։

— Սրանից հետո զգույշ կլինի, սավառնակի մոտ գալ իսկ չի ուզենա։

Իսկ մի նավաստի ինձ աչքով էր անում և ասում՝ օդաչու է, իսկական օդաչու։

Շփոթված, հայրիկս ինչ-որ բան փնտրեց, հանեց դրամապանակը, վճարեց, փոխարենը մի թղթի կտոր վերցրեց։ Մենք դուրս եկանք օդանավակայանից։

— Այդ ի՞նչ էր, հայրի՛կ։ Օդաչուի թո՞ւղթ,— ուրախ-ուրախ հարցրի ես։

— Ի՞նչ... Այդ թուղթը պատռիր դեն գցիր, մայրիկիդ էլ ոչինչ չասես։

— Դու էլ չասես։

Թուղթը չպատռեցի, պահեցի գրպանումս։

Հաջորդ առավոտ, երբ երկնքից լսվեց սավառնակի դռռոցը, վազեցի պատշգամբ, նայեցի վերև, արևը ինձ աչքով արեց, ես արտասվեցի։ Բայց այդ ոչինչ, հանեցի գրպանումս պահած թուղթը և վեր բարձրացրի.

— Տե՛ս, Արև, ես արդեն օդաչու եմ, իսկական օդաչո՛ւ...





# ԵՂՋԵՐՈՒՆ ՄԱՐՏԿՈՑՈՒՄ

*ՆԻԿՈԼԱՅ ՎԻՐՏԱ*

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

Դա պատահեց Հյուսիսային ռազմաճակատում՝ Կոլայի նեղուցի մոտ, Մուրմանսկ քաղաքից ոչ հեռու:

Օգոստոս ամիսն էր, ջինջ ու տաք օրեր էին: Ինձ, իբրև լրագրողի, ուղարկեցին զենիթային մարտկոցներից մեկը՝ թղթակցություն գրելու հրանոթայինների մասին: Մարտկոցը տեղավորված էր մի բլրի վրա, որը ըստ ռազմական քարտեզի կոչվում էր «բարձունք 101,8»:

Ես անցնում էի հրանոթից-հրանոթ, զրուցում մարտիկների հետ: Եվ ահա, փոսորակներից մեկում, ուր դրված էր հրանոթը, տեսա մի եղջերու: Հրանոթի փողն իջեցված էր, և եղջերուն մերթ մի կողքով, մերթ մյուսով քսվելով դրան՝ իր համար հանգիստ քորվում էր: Դա մի խոշոր, գեղանի արու էր, գորշ մկնագույն մորթով, որ պլպլում էր արևի տակ: Ճյուղավորված եղջյուրները հպարտորեն ձգվում էին գագաթն ի վեր:



Մի խոսքով, բավականին գոռոզ տեսք ուներ: Նույնիսկ չնայեց իմ կողմը:

Ես մի քիչ մոտեցա: Եղջերուն վերջապես ինձ իր ուշադրությանն արժանացրեց ու մեկնեց դունչը: Չնայած գոռոզ տեսքին, նրա դունչը զարմանալիորեն բարի էր: Իսկույն հասկացա, որ ուտելիք է խնդրում: Ուսապարկումս շոկոլադի մի քանի սալիկ կար: Հանեցի և, մի կտոր պոկելով, մեկնեցի նրան: Սկզբում հոտոտեց, ապա խոնավ շրթունքներով զգուշորեն բռնեց ու սկսեց ծամել:

Շոկոլադը, երևի, դուր եկավ նրան: Տվածս կուլ տալուց հետո եղջերուն նորից ձգվեց իմ կողմը: Ես ծիծաղեցի ու ետ քաշվեցի: Իսկ նա առաջ եկավ: Պարզ էր. էլի շոկոլադ էր ուզում: Ես նրան հյուրասիրեցի մի լավ կտորով ևս:

Այդ պահից մենք բարեկամներ դարձանք: Նա արդեն իմ կարիքն զգում էր. վազում գալիս էր մոտս և դունչը մեկնում ուսապարկիս: Բայց շուտով շոկոլադս վերջացավ: Եվ մի անգամ, երբ արդեն պաքսիմատ տվեցի, նա առավ կերավ, բայց տեսքից երևաց, որ խիստ հիասթափվեց: Հեռացավ ինձանից՝ արհամարհանքով ճոճելով եղջյուրները: Դրանից հետո ետևիցս չէր գալիս:

* * *

Այդ եղջերուի մասին ինձ պատմեց մարտկոցի հրամանատարը:

101,8 բարձունքը գալուց մի հինգ օր հետո, զենիթայինների ժամապահը վաղ առավոտյան տեսավ, որ կածանով բլուրն ի վեր ելնում է մի եղջերու: Նա այդ անկոչ հյուրի մասին տեղնուտեղը զեկուցեց հրամանատարին: Երբ հրամանատարն եկավ, զինվորներն արդեն շրջապատել էին կենդանուն, ասում-խոսում էին, իսկ սա հանգիստ նայում էր նրանց ու ճոճում կարճլիկ, ծիծաղելի պոչը:

Տայգացի մի զինվոր, որը պատերազմից առաջ եղջերվապահ էր եղել, ընկերներին բացատրում էր, թե սա, կա-չկա, ընտանի եղջերու է.

— Հեռացել է, տիրոջը կորցրել: Երևի մարդու կարոտ է քաշում:

Հրամանատարը մտածեց, որ եղջերուն կխանգարի զենիթայիններին, վճռեց, որ պետք է քշել հեռացնել դրան:

Զինվորները չէին ուզում բաժանվել այդ քնքուշ ու մեղմաբարո կենդանուց: Սակայն հրամանը հրաման է: Բայց արի ու տես, որ ինչ անում էին, չէին անում, եղջերուն տեղից շարժվել չէր ուզում: Առջևի կճղակներով պինդ կպել էր գետնին և ո՛չ հրելը, ո՛չ ձեռնուձունը վրան չէին ազդում:

Իհարկե, վերջ ի վերջո, կքշեին եղջերուին, թե որ հենց այդ պահին չհայտարարվեր մարտական տագնապ: Ֆաշիստները թռչում էին դեպի Մուրմանսկ: Զենիթայինները նետվեցին հրանոթների մոտ: Սկըսվեց կատաղի հրաձգություն: Զենիթայինները խփում էին ինքնաթիռներին, իսկ սրանք ռումբեր էին վար տեղում և բացում գնդացրային կրակահերթեր:



Մարտկոցի հրամանատարը, տարված թեժ մարտով, մոռացել էր եղջերուին: Բայց ահա պատահաբար նայեց այն կողմը, ուր կանգնած էր կենդանին, և զարմացավ: Եղջերուն հանգիստ պոկոտում էր խոտերը և հետևի աջ կամ ձախ սմբակով մերթ ընդ մերթ քշում անհանգստացնող մլակներին: Նրա հոգն էլ չէր, թե ինչ էր կատարվում շուրջը: Ռումբերի պայթյունը, հրանոթների որոտը չէին խանգարում, որ իր գործով զբաղվեր: «Չլինի՞ թե խուլ է»,— մտածեց հրամանատարը: Ոչ, խուլ չի: Երբ ռումբ է պայթում բարձունքի մոտերքում, նա մի պահ գլուխը բարձրացնում է, ականջ դնում:

Եղջերվի խիզախությունն այնպես դուր եկավ հրամանատարին, որ վճռեց նրան թողնել մարտկոցում:

Ա՛յ թե ուրախացան զինվորները...

Նրանք եղջերուին հյուրասիրում էին, ինչ որ ձեռքները ընկնում էր, իսկ սա ամեն բան ուտում էր մեծ ախորժակով: Հրամանատարը շուտով համոզվեց, որ նա բոլորովին էլ չի խանգարում զինվորներին, ընդհակառակը՝ ավելի աշխուժացնում է նրանց առօրյան: Ինչ-որ մեկը Գավրյուշկա անվանեց եղջերուին, և սա հետզհետե վարժվեց իր անվանը: Գավրյուշկան զինվորներից ոմանց սիրում էր, իսկ ոմանց էլ շա՜տ-շատ էր սիրում: Նա հատկապես կապված էր այն զինվորի հետ, որն ասաց, թե՝ սա ընտանի եղջերու է: Զինվորը գիտեր վարվել եղջերուի հետ, լավ էր նայում նրան, մաքրում, թիմարում էր, հաց ու շաքար տալիս:

Գավրյուշկան վախենում էր հրամանատարից և աշխատում էր, որքան հնարավոր է, քիչ երևալ նրա աչքին: Երևի հասկանում էր, որ նա իրավունք ունի ամեն տեսակի հրաման արձակել և չհանդիպել ոչ մի առարկության: Չէ՞ որ այդպես է զինվորական օրենքը:

Զինվորները հետզհետե զարմանալի գծեր էին նկատում Գավրյուշկայի մեջ: Հենց որ սկսվում էր հրաձգությունը, նա վազում էր դեպի այն հրանոթը, որի մոտ կանգնած էր լինում իր սիրելի զինվորը: Կանգնում էր հրանոթի կողքին, խոտ էր կրծմրծում կամ պարզապես որոճում, մեկ-մեկ էլ աչքի տակով նայում էր, որ տեսնի այդտե՞ղ է իր մտերիմը:

— Հետաքրքիր է,— ծիծաղում էին զինվորները,— թեև մեր Գավրյուշկային մարտը չի սարսափեցնում, բայց էլի ընկերոջ մոտ է իրեն ապահով զգում:

Ուսումնական պարապմունքներին Գավրյուշկան մի կողմ էր քաշվում, որպեսզի չխանգարեր մարտիկներին:

Մի տարօրինակ բան էլ նկատեցին Գավրյուշկայի վարքում: Երբ լույսը բացվում էր, նա գետնափորից-գետնափոր էր անցնում, ստանում իր բաժին հացի կտորը և սկսում պոկոտել չոր խոտերը: Մեկ էլ բարձրացնում էր գլուխը, փշշոցով ներշնչում ու սկսում սմբակներով դոփել, իսկ աչքերը արնակալվում էին: Սկզբում զինվորները զարմանում էին, բայց որոշ ժամանակ անց, ամեն ինչ պարզ դարձավ: Հենց որ նա քիթը ցցում էր ու սկսում դոփել, մի տասը րոպե հետո գալիս էր դիտորդների լուրը թշնամու ինքնաթիռների մոտենալու մասին: Գավրյուշկան իր շատ նուրբ լսողությամբ տագնապի ազդանշանից դեռ շատ առաջ արդեն որսում էր ինքնաթիռների հռնդյունը:

Գավրյուշկան գիշերը քնում էր այն գետնափորի կողքին, որտեղ ապրում էր նրա բարեկամը: Բայց ֆաշիստները գիշերային թռիչքներ էլ էին կատարում: Զգալով ինքնաթիռների մոտենալը, նա ուտնում էր, կճղակներով ուժգին դոփում և չէր հանգըստանում, մինչև որ մարտիկները դուրս էին գալիս գետնափորից ու վազում դեպի հրանոթները:



Այսպես, Գավրյուշկան դարձավ ոչ միայն մարտկոցի սիրելին, այլև մարտական ընկերը:

Գավրյուշկան սիրում էր զինվորների հանգստի պահին խաղալ նրանց հետ: Հաճախ մեկնումեկը մոտե-

նում էր նրան և սկսում ծաղրել, բարկացնել.

— Գավրո՛ւշիկ, ապո՛ւշիկ, Գավրո՛ւշիկ, ապո՛ւշիկ...

Եղջերուն ձևանում էր, թե խիստ բարկացած է, պոզերը սրում ու հարձակվում էր: Զինվորները ծիծաղելով դեսուդեն էին փախչում: Գավրյուշկան հետապնդում ու հասնում էր որևէ մեկին, իսկ նա դիտմամբ գետին էր ընկնում: Եղջերուն զգուշորեն բոթում, իբրև թե պոզահարում էր: Այդ խաղը և էլի ուրիշ զվարճալի բաներ նրան սովորեցրել էր իր բարեկամ վինվորը: Գավրյուշկան, օրինակ, կարող էր մեռած ձևանալ և զինվորի հրամանով ակնթարթորեն ոտքի ելնել: Երբեմն նա խաղ անելու տրամադրություն չէր ունենում, ինչքան էլ որ ձեռք առնեին: Խոտերը պոկոտելով, շրջում էր բլրին և ոչ մի ուշադրություն չէր դարձնում զինվորների կանչ ու ծիծաղին:

— Գավրյուշկան այսօր քեֆ չունի,— կատակում էին զինվորները:— Երևի վատ է քնել:

Գավրյուշկան սիրում էր կողերը քորել՝ քսելով հրանոթի փողին, բայց նրան ավելի շատ դուր էր գալիս, որ զինվորները քորեն ականջը կամ փորը թիմարեն: Մարդկային ձեռքի քնքուշ հպումը արբեցնում էր նրան, և նա այդ պահերին ինքնամոռացության մեջ քարանում մնում էր:

Երբ ես մարտկոցում էի, զինվորներին հյուր եկան Մուրմանսկի թատրոնի արտիստները և համերգ տվին:

Զինվորների հետևում կանգնած՝ Գավրյուշկան նույնպես լսում էր համերգը: Նրան հատկապես դուր եկավ ջութակի նվագը: Նա այնպիսի ուշադրությամբ էր լսում ջութակահարին, որ նույնիսկ մոռացել էր որոճալը և մլակներին քշելը: Երբեմն եղջյուրներն էր օրորում, կարծես թե զարմանալով ջութակահարի վարպետությամբ: Իսկ արտիստները մեծ հրճվանքի մեջ էին: Չէ՞ որ առաջին անգամ նրանց համերգին եղջերավոր հանդիսական էր ներկա լինում:

...Պատահում էր, որ Գավրյուշկան հեռանում էր մարտկոցից և մի ամբողջ շաբաթ չէր երևում: Հավանաբար իջնում էր խոտառատ հովիտը: Հետո նորից էր գալիս ու սկսում ուտելիք խնդրել զինվորներից:

Հինգ օր մնացի 101,8 բարձունքում: Իսկ մեկ

# ԱՎԵՐՎԱԾ ՎԱՆՔԻ ՍՏՎԵՐԸ



ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

Նկ. ԷԴՎԱՐԴ ԱԲԱՋՅԱՆԻ

Ես ու Խոսրովը ընկերացանք ճամբար գնալիս, ավտոմեքենայում: Առաջին հայացքից զգացինք, որ աշխարհի ամենահավատարիմ ընկերներն ենք: Խոսրովը ոտքով հրելով ճամպրուկս, հարցրեց.

— Ինչի՞ց է տռզել...

— Գրքերից,— ասացի:

— Քանի՞սն են...

— Քսան հատ:

— Պա՛հ, ծառի ճյուղին հինգ սատանա,— ծիծաղեց նա ու հանկարծ լռջացավ:— Չլինի՞ առաջին անգամ ես լինում պիոներական ճամբարում:

— Առաջին:

— Ոչինչ, ինձ հետ չես կորչի. մի ամիսն այնպես անցնի որ...— Խոսրովը ծնկներին դրեց իր կիսամաշ ուսապարկն ու հարցական հայացքով նայեց.

— Ի՞նչ է...

— Գրքեր,— միամտաբար ասացի ես:

— Թո՛ղ քո գրքերը,— բարկացավ Խոսրովը,— տանը՝ գրքեր, դպրոցում՝ գրքեր, ճամբարո՞ւմ էլ գրքեր... Ծառի ճյուղին հինգ սատանա, թե դու քո այդ քսան գրքերից կեսը կարդացիր, ես Խոսրով անունս կփոխեմ: Գիտե՞ս քանիերորդ անգամն եմ ճամբար գնում... վեցերորդ:

— Վե՜ց...— Իսկ ես միշտ մի պատրվակ էի գտնում, որ հայրիկս ինձ պիոներական ճամբար չուղարկեր: Կամ տանը նստած կարդում էի շարունակ, կամ էլ հայրիկիս ու մայրիկիս հետ գնում էի Սոչի ու խեղդվում ձանձրույթի մեջ:

Խոսրովն ինձ տվեց մի քառածալ թուղթ ու ականջիս շշնջաց.

— Կարդա,՛ թե ինչ կա ուսապարկումս ու լռի:

Մտքումս կարդացի՝ «Երկու քսան մետրանոց թոկ՝ երկու հոգու համար, երկու հատ գրպանի լապտեր՝ ութ

ամիս անց, ռազմաճակատից վերադառնալիս, որոշեցի այցելել իմ բարեկամ զենիթայիններին:

Ծանոթ կածանով բարձրացա բլուրը և զարմանք կտրեցի: Ոչ մի մարտկոց. միայն Գավրյուշկան էր այնտեղ, որը թափառում էր տխուր, հոտոտում հողը, ականջները տագնապով թափահարում ու խորը-խորը հառաչներ արձակում:

Հասկացա, որ մարտկոցը տեղափոխված էր: Բայց թե ինչո՞ւ Գավրյուշկային չէին տարել հետները, գլխի չէի ընկնում: Շա՜տ էի խղճում այդ զգայուն կենդանուն, բայց ի՞նչ կարող էի անել:

Իմացա զենիթայինների նոր տեղը, գնացի, որ հարցուփորձ անեմ Գավրյուշկայի մասին: Եվ ահա, առաջինը, որին հանդիպեցի բլուրը բարձրանալիս, հենց Գավրյուշկան ինքն էր: Պարզվեց, որ երբ հրաման է ստացվել մարտկոցը մոտեցնել ռազմաճակատի գծին, Գավրյուշկան թափառելիս է եղել հովտում: Զինվորները ման են եկել բարձունքի շուրջը, չեն գտել նրան, տխրել են, բայց, ինչ արած, պիտի հեռանային առանց գտնելու: Անցել է մի քանի օր և մի անգամ առավոտյան, երբ Գավրյուշկայի բարեկամ զինվորը դուրս է եկել գետնափորից, տեսել



է նրան: Գավրյուշկան պինդ քնած է եղել, երկար ու դժվարին ճանապարհից հոգնած, ջարդված: Ինքն էր եկել գտել բարեկամներին: Իսկ դա այնքան էլ հեշտ բան չէր: Շա՜տ էին ուրախացել զենիթայինները...

Հետո ինձ տեղափոխեցին: Իսկ թե ինչ եղավ Գավրյուշկան, չեմ կարող ասել: Երևի պատերազմից հետո նրան իր հետ տարած կլինի այն զինվորը, որին եղջերուն ամենից շատ էր սիրում:

*Թարգմ. Հ. ՀԱՐՑԱՆԻ*



մարտկոցներով, երկու գրչահատ, երկու հատ երկրաբանի մուրճ, մեկ սպիրտայրոց, քսան լուցկի, մեկ տուփ մոմ, երկու տափաշիշ, մեկ կաթսայիկ, երկու կողմնացույց, քարտեզներ...»

— Լսի՛ր,— կիսատ թողնելով իրերի շարքը հարցըրեցի ես,— դու ճամբա՞ր ես գնում, թե՞ հեռավոր ճանապարհորդության... Գուցե պատրաստվում ես գետնի տակն անցնելու քո այս իրերով...

— Այդ է որ կա. գետնի տակն եմ անցնելու, միայն թե քեզ հետ միասին...

*

* *

Մի քանի օր անց Խոսրովն ականջիս շշնջաց.

— Պառկիր անկողնում, աղվեսաքուն տուր, գնալու ենք...

— Լավ,— ասացի ու սիրտս տուփում փակված թիթեռի նման թպրտաց:

... Մինչև թեքված կեչին գնացինք ստվերներ դարձած: Թաքստոցից հանեցինք Խոսրովի ուսապարկն ու ուղղվեցինք դեպի ձորաեզրի վանքը:

— Ա՛յ, կտեսնես, որ ես ճշմարիտ եմ,— անընդհատ ասում էր Խոսրովը,— արդեն երկու անգամ եղել եմ այնտեղ, բայց կարևորն այսօր է. լուսինը տասնհինգ օրական է...

Ես չէի համարձակվում խոսել. լռություն դարձած քայլում էի Խոսրովի հետևից: Իմ երևակայությունը հազար ու մի պատկերներ էր կենդանացնում կարդացած գրքերից, և ես, էլեկտրականացած, ոչ թե քայլում էի, այլ լողում գիշերվա կաթնագույն մշուշում:

Հասանք ավերված վանքին: Ասացի.

— Խոսրո՛վ, դու գերեզմանաքարերից չես վախենում, չէ՞...

— Բոլորովին,— ասաց:

— Ես էլ,— ասացի:— Բոլոր սարսափելի պատմությունները հորինված են:

— Հիմարություն է,— ասաց Խոսրովը,— հայրիկիս հնագետների խմբի հետ ես մի անգամ ամբողջ գիշեր մնացել եմ քարայրում: Նախամարդու նման նստել էինք խարույկի շուրջն ու կրուցում էինք քարանձավաբնակ հին մարդկանց մասին: Իսկ նրանք՝ այդ մարդիկ, ստվեր ու պատկերներ դարձած, դաջված էին քա-

խանձավի պատերին ու մեկ էին նայում ծուռտիկ գլուխներով: Ուրիշը լիներ իմ տեղը՝ «Վա՜յ մամա ջան...» լաց կլիներ, իսկ ես տասը տարեկան էի ու չէի վախենում: Հնագետը վախկոտ չպետք է լինի...

— Չկարծես, թե ես վախից ասացի,—փնթփնթացի ես:

Սակայն, ճշմարիտն ասած, եթե չվախենայի ճամբարով մեկ խայտառակվելուց, մեկ շնչով կվազեի մինչև իմ մահճակալն ու կուչ կգայի բարձիս տակ:

— Ափսո՜ս,— նայելով իր հին ժամացույցին՝ ասաց Խոսրովը,— մինչև կես գիշեր երկու ժամ էլ կա: Իսկ հետո վանքի գմբեթի ստվերը կշարժվի տասներկու քայլ ու կանգ կառնի գաղտնարանի վրա...

— Ի՞նչ գաղտնարան,— հարցրեցի ես:

— Կարդա,— և Խոսրովն ինձ տվեց հապար անգամ ճմրթված մի գրքույկ:

Գրպանի լապտերիկի լույսի տակ կարդացի Խոսրովի նշած հատվածը. «...Կիսավեր վանքի վրա դեռ այսօր էլ սև անգղի նման նստած է այն քարե խաչը, որն իր ստվերով ամեն տարի հուլիսի 25-ին և միայն այդ օրը կեսգիշերին, երբ լուսինը բոլորում է տասնհինգ օրը, ցույց է տալիս վանքի գաղտնարանի մուտքը: Եվ նա, ով տասներկու քայլ անելով դեպի արևելք, գտնի մուտքի վրա դրված գերեզմանաքարը և լուծի նրա վրա արված նկարների խորհրդավոր իմաստը, թեթև մի հրումով կբացի գաղտնարան տանող դուռը...»

Հետո գրքի երեսին ես կարդացի իտալացի գրողի անունն ու ասացի.

— Ի՜նչ գաղտնապահն ես, Խոսրո՛վ... Տես, է՛, ինչ ես ունեցել ինձանից թաքցրած:

— Լավ, մի՛ բարկացիր,— ասաց Խոսրովը,— հիմա դու ամեն ինչ գիտես ու միասին ենք...

Հետո ես ու Խոսրովը սպասեցինք, սպասեցինք խաչի ստվերին, մրսեցինք ու մտանք վանքի նեղլիկ խցերից մեկը: Մեր բախտից ինչ-որ մեկը մի խուրձ չոր խոտ էր փռել այնտեղ, պառկեցինք վրան ու ըսկըսեցինք երազել: Խոսրովը նույնիսկ փայտեր գտավ, ու մենք խարույկ և թեյ էլ ունեցանք: Ա՜յ թե գիշեր էր... Խոսում էինք ամեն ինչից, միայն թե չքնեինք...

...Ու մեկ էլ արթնացանք շեփորի կանչից: Այդ մեր ճամբարի տղաներն էին մեկ գտել ու ականջներիս տակ շեփորում էին: Ես նայում էի շուրջս ու բան չէի հասկանում, իսկ Խոսրովը... Այդ դեպքից քանի տարի է անցել, ես չեմ մոռանում նրա դեմքի վշտի ու ափսոսանքի արտահայտությունը:

Ես նրան փորձեցի մխիթարել:

— Ոչինչ,— ասացի,— չէ՞ որ այդ գիրքը Իտալիայի մասին է, հասկանո՞ւմ ես... Ես հենց գիշերը գլխի ընկա, հասկանո՞ւմ ես...

Բայց նա ինձ նայեց իր խոշոր, կապույտ, թափանցիկ աչքերով ու... թոթվեց ուսերը:



# ԳԱՐՈՒՆ ԵԿԱՎ

ԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ

— Գարու՜ն եկավ, գարու՜ն եկավ,—
Երգեց ծիտը ծառի ճյուղին:
Ծլվլոցը ներքև ընկավ,
Տաք-տաք համբույր տվեց հողին:

Ձնծաղիկը պարզեց հողից
Գլխիկը իր ճերմակաթագ,
Թերթիկները ոսկեշողիկ
Թրթռացին արևի տակ:

Մանուշակը թփերի մեջ
Մի քնքշություն դարձավ համակ,
Կանգնեց քարին, երգեց անվերջ
Կաքավիկը՝ մի բաց նամակ:

Տաք գոլորշին երկինք հասավ,
Ամպը ամպին բարև տվեց,
Սեգ արծիվը սլացք դարձավ,
Գարունն առած երկինք թռեց:

Ծիծեռնակը ծառին թառած՝
Գարուն երգեց զվարթաձայն,
Ձովողյունը քամին տարավ,
Տարավ կապեց շող-ծիածան:

— Գարու՜ն եկավ, գարու՜ն եկավ,—
Երգեց գետը, երգեց առուն,
Նրանց երգը ճամփա ընկավ,
Գնաց հեռու՛, գնաց հեռու՛...

# ԳԱՐՆԱՆԱՅԻՆ

ՍԱՐԳԻՍ ԽԱՌԱԶՅԱՆ

Մեր սարերն իրենց ճամփան բացել են,
Ձյունը մաշվում է լեռան գահին,
Ծիծեռնակները վերադարձել են
Եվ նորոգում են բները հին:
Բուրում է հողը, ծորը երգում է,
Հանդում ծաղկել է վայրի տանձին,
Խոնավ մշուշը սարը գրկում է,
Ուրախ վազում է դաշտում իմ ձին:
Նստել է ճամփին սևուկ Բողարը,
Գարնան արևն է շոյում նրան,
Քունը տանում է, մայում է գառը,
Գետակն աղմուկն է բերում լեռան:
Արդեն տանում են բնության բույրը
Ժիր մեղուները սարից ծաղկած,
Տանում են թափվող արևի հյուրը,
Որ քաղցրություն տան ապրող մարդկանց:
Ջվարթ զնգում է այս գարնան զանգը՝
Ղողանջում է նա հազար ձևով,
Եվ ծաղիկների մեղմ երազանքը
Երկինք է ելնում հովի թևով:



# ՋՐՎԵԺ

ՀԵՆՐԻԿ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Ժայռից կիրճն է ահա ցատկում,
Ծերանում է միանգամից,
Նմանվում է ակնթարթում
Իմ տատիկի ճերմակ ծամին:

Մի վիթխարի վիշապ օձ է
Ու ոչ ոքի նա չի գթա.
Սոսկալի է ֆշֆշոցը,
Զգույշ, մեկ էլ վրա կտա:

Կատաղած է, կապելու գիժ,
Ջարկվում քարին, ժայթքում
փրփուր,
Ջուրն է ցատկում ժայռի գրկից
Ու դառնում է փշուր-փշուր:

Ջուրն է իջնում...ա՛յ քեզ հրաշք,
Մեկ էլ տեսար՝ գետում ցրվեց...
Գեղեցիկ է, գիտե՞ս, Հրա՛չ,
Անվանում են նրան ջրվեժ:

# ԹՌԻ՛Ր, ՓՈՔՐԻԿ ԿՌՈՒՆԿ

ՄԻՑՈՒԿՈ ՕՈՆՈ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Փոքրիկ թղթե կռունկներն այրվեցին մինչև վերջ: Գետնի վրա մնաց լոկ մի բուռ մոխիր: Կաձուեն կանգնել էր մոխրի առջև՝ բամբուկե ցախավելը ձեռքին:

«Կարապները թռչում են...— անցավ նրա մտքով,— իսկ այս կռունկներն այլևս երբեք չեն թռչի...»

Աղջիկը թափահարեց ցախավելը, և փոքրիկ կռունկներից մնացած մոխիրը սև ալյուրի պես մաղվեց ջրի երեսին:

«Բավական է... ժամանակն է վերջ տալու այս փոքրիկ կռունկների միությանը: Զուր է այս ամենը: Որքան էլ ջանաս, արդյունքը չնչին է, իմ մասին էլ պետք է մտածեմ: Օրինակ, ընդունվեմ մի լավ քոլեջ... թե չէ



ամեն ինչ ուրիշների համար: Այսօր կավլեմ վերջին անգամ ու կհեռանամ...»

Բայց Կաձուեն չէր շտապում: Նա նորից ու նորից ավլեց այն տեղը, ուր երևում էին մոխրի հետքերը: Ըզբոսայգին խաղաղ էր: Այնպես խաղաղ, ինչպես լինում է միայն կիրակի առավոտները: Սոսու մի կանաչ տերև պտտվելով գետին ընկավ: Ուղիղ մեկ տարի առաջ Կաձուեն հենց այստեղ այսպիսի մի տերև վերցրեց:

«Մեկ տարի էլ անցավ...»— մտածեց նա:

Առաջին անգամ Կաձուեն այս այգին եկավ անցյալ ամառվա վերջին: Եկավ «Փոքրիկ կռունկների միությունից», որ ավլի ու մաքրի բրոնզե Սադակոյի չորս բոլորը:

«Այո, մի ամբողջ տարի ես անում էի այն ամենը, ինչ կարող էի: Շատ ջանք էի թափում»:

Կաձուեն բարձրացրեց հայացքը և նայեց Սադակոյին: Անուամենայնիվ աղջիկն իրեն մեղավոր էր զգում:

«Ա՛յ, Սադակոն էլ գիտե: Ամեն կիրակի, երբ ուրիշները հանգստանում էին, ես վաղ առավոտյան գալիս էի այստեղ: Քեզ համար, Սադա՛կո, հազարավոր կռունկներ էին բերում: Մի շաբաթվա ընթացքում նրանք վեր էին ածվում կեղտոտ, ճմրթված թղթի կտորների: Ես հավաքում էի դրանք և այրում: Հետո գնում էի հիվանդանոց՝ ճառագայթային հիվանդությամբ տառապողների սպիտակեղենը լվանալու: Տոմիկո մորաքույրը, որի հետ ես այնտեղ մտերմացել էի, մեռավ: Մեռավ սպիտակարյունությունից... Անիծյալ ռումբ: Դեկտեմբերին ես քայլում էի փողոցներով՝ դրամ էի հավաքում: Մուրալն ամոթ էր, շատ ամոթ... Բայց և այնպես երեք օրում ես հավաքեցի հազար երկու հարյուր հիսուն իեն: Ծննդյան տոների առթիվ հիվանդների համար նվերներ գնեցի: Դա մեծ ուրախություն պատճառեց նրանց: Այդ օրը նույնիսկ հեռուստատեսությամբ ցույց տվեցին ինձ՝ մահճակալին պառկած մի հիվանդի ձեռքը սեղմելիս: Բայց և այնպես... գիտե՞ս, Սադա՛կո, դա բոլորին չէ, որ դուր է գալիս: Ա՛յ, մայրս ինձանից դժգոհ է: Նա գտնում է, որ դա երեխայի զբաղմունքը չէ: Ես գիտեմ, թե ինչու է նա այդպես մտածում, ես այդքան էլ հիմար չեմ: Առաջ, երբ մենք Սիկոկուում էինք բնակվում, ես ավելի լավ էի սովորում... Բայց ի՞նչ կարող եմ անել, եթե մյուս երեխաներն ինձնից լավ են սովորում: Չէ՞ որ ես շատ եմ ջանում: Ազնիվ խոսք: Բայց ինձ մոտ չի ստացվում: Ինչո՞ւ ոչ ոք չի ուզում հասկանալ այդ»:

Պպզելով՝ Կաձուեն դանդաղ կարդաց հուշարձանի պատվանդանի վրա փորագրված բառերը.

*Մարդիկ։*
*Աղաչում ենք ձեզ։*
*Պահպանեցեք խաղաղությունը երկրի վրա։*

«Մեծերը խելացի են... Բայց մի՞թե նրանք ամեն ինչ հասկանում են: Հասկանո՞ւմ են, արդյոք, այս բառերը: Ինչո՞ւ են նրանք խուլ ձևանում, կարծես այս ամենը նրանց չի վերաբերում»:

Կպձուեն հասկանում էր, որ ինքն անարդարացի է, բայց այստեղ, այս զբոսայգում Սադակոյի մոտ դժվար էր արդարացի մնալ: Սադակոն կանգնել է՝ բարալիկ, սլացիկ, դեպի երկինք պարզած թղթե կռունկը: Ե՛վ ինքը՝ Սադակոն, և՛ կռունկի թևիկները հավերժական, աղոտ առկայծող բրոնզից են: Այդ քանդակը բոլորն անվանում են «Ատոմային ռումբից զոհված երեխաների հուշարձան»:

Կաձուեն այս զբոսայգին եկավ հենց այն օրը, երբ առաջին անգամ ուսուցչից լսեց Սադակոյի պատմությունը: Առաջ նա ոչինչ չգիտեր այդ աղջկա մասին: Կաձուեն ծնվել էր Սիկոկուում, իսկ Հիրոսիմա էր եկել բոլորովին վերջերս:

Կաձուեն նորից նայեց Սադակոյին: Նրա բրոնզե հասակակցի դեմքը աղոտ գծագրվում էր առավոտյան մշուշում: Նույնքան աղոտ ու փութկոտ էին նաև Կաձուեի մտքերը:

«Նա իմ տարիքին էր: Եվ սովորում էր նույն դասարանում... Նակամոտի փողոցի միջնակարգ դպրոցի առաջին դասարանում... Ասում են, նա անչափ շատ էր ուզում ապրել: Վեց հարյուր քառասուներեք թղթե կռունկ սարքեց ու մեռավ: Վերջինը սարքել էր արդեն բոլորովին կուրացած վիճակում...»

* * *

Դա տասը տարի առաջ էր: Սադակոն եկավ միջնակարգ դպրոց: Նա բոլորից արագ էր վազվզում միջանցքներով: Նա սիրում էր վազել, սիրում էր սպորտը: Դպրոցի բոլոր անկյուններում արծաթահնչյուն զանգակի պես տարածվում էր նրա ծիծաղը: Բայց մի անգամ դասամիջոցին նա վայր ընկավ: Նրան տարան հիվանդանոց և այլևս չվերադարձավ ո՛չ տուն, ո՛չ դպրոց: Բժիշկները Սադակոյի հիվանդությունն անվանեցին սպիտակարյունություն: Աղջիկը Հիրոսիմայում էր եղել այն օրը, երբ քաղաքի վրա ռումբ նետվեց: Դա վճռեց նրա բախտը:

Հիվանդանոցի մահճակալին պառկած՝ Սադակոն միայն մի բանի մասին էր մտածում. «Միայն թե կարողանամ ոտքի կանգնել: Ոտաբոբիկ վազվզել... Նորից առողջ լինել: Ինչպես առաջ... ինչպես առաջ...»

Բայց Սադակոյի ոտքերը բարակել էին և պաղ էին սառույցի պես: Աղջկան թվում էր, թե արյունը սառել, պնդացել էր երակներում: Նա համբերությամբ դիմանում էր բոլոր սրսկումներին, խմում էր ամենադառը դեղերը:

— Ես կառողջանամ, չէ՞, բժիշկ,— հարցնում էր նա,— այնպես չէ՞:

— Դե, իհարկե, դու անպայման ոտքի կկանգնես,— պատասխանում էր բժիշկը՝ դեմքը շրջելով Սադակոյից:

Աչքերը փակած՝ Սադակոն հիշում էր ուրախ սպորտային տոնը դպրոցի բակում, արևը, ընկերների գոռում-գոչյունը, աչըշավուղին, դեպի երկինք հառած իր դեմքը և սրտի ուժեղ զարկերը... Սադակոն միշտ առաջինն էր լինում: Ահա նա, երկու ձեռքը վեր պարզած՝ ուրախ, սրընթաց, կտրում է վերջնագծի ժապավենը:

Սեղանի վրա, Սադակոյի մահճակալի մոտ դեղափոշիներից թղթեր էին մնում: Այդ թղթիկներից աղջիկը սկսեց փոքրիկ կռունկներ սարքել: Դա նրա մահից տասը օր առաջ էր:



Շոգ ամառ էր, իսկ կռունկներ պատրաստող մատները սառչում էին ցրտից: Սադակոն շտապում էր: Չէ՞ որ նա պետք է հազար հատ կռունկ սարքեր: Մեկը պատրաստ է, կարելի է մի փոքր հանգստանալ: Էլի մեկը և նորից հանգիստ: Ծանր աշխատանք է: Իսկ Սադակոյի ուժերն այնքա՜ն քիչ են:

«Ես կառողջանամ: Նորից կկարողանամ վազել: Անպայման կկարողանամ...»— մտածում էր նա, և հույսը տաքացնում էր նրա սառչող մատները:

Մի հին հավատալիք կա Ճապոնիայում: Եթե կարողանաս հազար հատ կռունկ սարքել, ապա ցանկությունըդ կիրականանա, անպայման որևէ լավ բան կպատահի: Հազար կռունկներ կլսեն Սադակոյի աղերսանքը: Չեն կարող չլսել:

Վեց հարյուր քառասուներեքերորդ կռունկն ավարտելու հետ աղջիկը մեռավ: Մնացել էր երեք հարյուր հիսունյոթը՝ հազարը լրացնելու համար: Պակաս մնացած կռունկները պատրաստեցին այն դասարանի երեխաները, որտեղ սովորում էր Սադակոն...

* * *

...Կռունկներն այրվեցին: Նրանք մոխիր դարձան, ինչպես Սադակոն: Բայց մարդիկ չմոռացան նրանց, և, ոչ ոք չմոռացավ այն աղջկան, որին պայթյունից շատ

տարիներ հետո, այնուամենայնիվ, սպանեց ատոմային ռումբը:

— Ինչո՞ւ մեռավ Սադակոն,— հարցնում էին երեխաները:

— Մենք չենք ուզում Սադակոյի պես մեռնել,— ասացին նրանք:

Այդպես ծնվեց «Փոքրիկ կռունկների միությունը»:

— Հիշեցե՛ք Սադակոյի մահը,— ասում էին երեխաները՝ անցնելով քաղաքի փողոցներով:

— Թույլ չե՛նք տա, որ կրկին ռումբ պայթի:

— Պայքարե՛ք ռումբի դեմ, մարդի՛կ:

Մանկական ձայները հնչեցին ողջ Հիրոսիմայով մեկ: Այդ ձայները զնգացին ամբողջ Ճապոնիայում: Եվ ահա, գետի ափին, զբոսայգում արդեն կանգնած է «Ատոմային ռումբից զոհված երեխաների հուշարձանը», կանգնած է բրոնզե Սադակոն, ձեռքին կռունկը՝ դեպի երկինք պարզած:



* * *

Կաձուեն ցնցվեց՝ լսելով ուրախ մի ծիծաղ: Ամերիկացի մի տուրիստ պատրաստվում էր լուսանկարել Սադակոյին: Կաձուեն շարունակեց կանգնած մնալ՝ ձեռքը հուշարձանի պատվանդանին: Նրա ափը ջերմացնում էր սառը քարը: Նա ատելությամբ նայեց երիտասարդ ամերիկացուն. «Ինչպե՞ս է համարձակվում ծիծաղել այստեղ: Այստեղ, այս վայրում: Լուսանկարում է... Նրանց ի՞նչ: Կարծես, թե այս աշխարհում ապրելիս չլինեն: Կարծես ինչ-որ ուրիշ բան են ուզում, այլ բան, քան բոլոր մարդիկ: Եվ այդ ի՞նչ ուժ է նրանց շարժման մեջ դնողը, որին մենք ոչինչ անել չենք կարող: Իսկ գուցե միայն ե՞ս եմ այսքան անօգնական: Չեմ կարող: Հոգնել եմ... Կթողնեմ «Փոքրիկ կռունկների միությունը»: Կդառնամ սովորական աղջիկ, «ինչպես բոլորը», հուրախություն մայրիկիս: Եվ այն ժամանակ ոչ ոք չի ասի, թե ես քիթս խոթում եմ ուրիշների գործերի մեջ: Կարծեմ այդ ամերիկացին ինձ «հանդուգն» անվանեց»:



Կաձուեն նորից նայեց Սադակոյին: Արևն այնպես էր փայլում, որ ցավեցնում էր աչքերը: Թվում էր, թե բրոնզե Սադակոն ժպտում է արևի ճառագայթներով ողողված: Եվ աղջկան թվաց, թե նա խոսեց.

«Կռունկը, այնուամենայնիվ, կթռչի: Իմ ձեռքից կթռչի Հիրոսիմայի երկինքը: Ես կտեսնեմ այդ օրը: Միայն թե պետք չէ հուսահատվել, Կաձուե: Ես գիտեմ, թղթե կռունկները չեն կարող երկինք թռչել: Այրվելով՝ նրանք մոխիր են դառնում: Բայց մարդկանց սրտերը հնարավոր չէ մոխիր դարձնել: Երկրի վրա մարդիկ կռունկներ են սարքում, հազարավոր կռունկներ, և նրանց սրտերը հնարավոր չէ մոխրացնել: Իսկ երբ երկրագնդի բոլոր մարդկանց իղձերն իրականանան, իմ կըիղձերը իրականանան իմ կըռունկը կթռչի դեպի երկինք: Կգա այդ օրը...

Բրոնզե Սադակոն ժըպտում էր, կարծես կենդանի լիներ:

— Բայց, Սադա՛կո, չէ՞ որ քո կռունկը...

Կաձուեն ուզում էր ասել, որ դա անհնար է, որ բրոնզե կռունկները չեն թռչում, բայց նա ոչինչ չասաց: Նա ամաչում էր իր րոպեական թուլությունից: Նա միայն լուռ խոնարհեց գլուխը:

Ռուսերենից թարգմ.
ԱՆԱՀԻՏ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ

# ՔՈ ՋՈԿԱՏԻ ԱՎԱՆԴԱԿԱՆ ՕՐԸ

Վերջերս Երևանի դպրոցներից մեկը մեր խմբագրություն էր ուղարկել մի հրավիրատոմս. «...Հրավիրում ենք Ձեզ 26 կոմիսարների անվան ջոկատի ավանդական խարույկին...» Կարդացինք հրավիրատոմսը, ասացինք՝ ի՜նչ լավ են մտածել, իրենց համար ստեղծել են ավանդական օր։ Հետաքրքրվեցինք և իմացանք, որ իրոք, այդ ջոկատը հետաքրքիր շատ միջոցառումներից բացի, ունեցել է իր ավանդական օրը. հինգ տարի շարունակ բոլորը հուզմունքով են սպասել սեպտեմբերի 19-ին։ Այդ օրը նրանք երդում են տըվել և ընդունվել պիոներիայի շարքերը։ Ու թեկուզ արդեն կոմերիտականներ են, բայց սեպտեմբերի 19-ը նրանց համար մնացել է հարազատ, սեփական օր։ Եվ իրոք, շատ լավ կլինի, եթե մեր բոլոր ջոկատներն ունենան ավանդական օրեր։ Ավանդական օրերը ավելի համերաշխ, ավելի միասնական են դարձնում ջոկատը։ Չէ՞ որ այդ օրը հետաքրքիր կազմակերպելու համար մտահոգվում են բոլորը, երկար ժամանակ խորհրդակցում են միմյանց հետ, մտորում միասին, հարցնում իրար։ Ավանդական օրեր կարելի է ստեղծել տարբեր առիթներով. ա՛յ, եթե ձեր ջոկատը որևէ հերոսի անունով է կոչված, կարելի է ամեն տարի նրա ծննդյան տարելիցի օրը որևէ հետաքրքիր միջոցառում կազմակերպել, կամ հավաքույթ՝ հեղափոխության թանգարանում, կամ հանդիսավոր տողան, կամ հանդիպում նրա հարազատների հետ, բայց անպայման նշեք այդ օրը։ Այդ օրը թող լինի ձեզանից յուրաքանչյուրի համար հարազատ օր, թող այդ օրվան սպասեն բոլորը, ամեն մեկն իր հետաքըրքիր գործերով ու նախաձեռնություններով։

Ուսումնական տարվա ընթացքում դուք շատ հավաքույթներ, հանդիպումներ, գրական դիսպուտներ և երեկոներ եք կազմակերպում, բայց այդ օրը, ինչ էլ կազմակերպելու լինեք, կլինի ավելի գեղեցիկ, ավելի բովանդակալից, ավելի նշանակալից, և որ ամենակարևորն է, ձե՛ր օրը կլինի։

Ջոկատում կարելի է ստեղծել ավանդական գարնան տոն մարտի երկրորդ կիրակի օրը դուրս գալ ձնծաղիկ և մանուշակ հավաքելու։ Սահմանված սպորտային օրը կարելի է ջահերով գիշերային արշավի դուրս գալ, աշխարհագրական օրը անցկացնել բնության գրկում, ուսումնասիրել հայոց բնաշխարհը, ծանոթանալ մեր հնություններին։ Իսկ շրջաններում պիոներները կարող են մասնակցել նաև խաղողի առաջին բերքահավաքին։

Եթե ուզենաք, անպայման կըստեղծվեն ավանդական օրեր։ Այդ հարցում ձեզ սիրով կօգնեն նաև ավագ ջոկատավարներն ու դասղեկները։ Միայն պետք է այնպես անել, որ ինչ էլ կազմակերպելու լինեք, ինչ առիթով էլ այն լինի, լինի հետաքրքիր, բովանդակալից բոլորի համար, որպեսզի բոլորը սիրով մասնակցեն այդ միջոցառմանը, որպեսզի յուրաքանչյուրը անհամբերությամբ սպասի այդ օրվան։

*ՆԱՏՅԱ ՍԱՐԳԱՋՅԱՆ*



«Փայլակ» խմբը № 81 դպրոցում



Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 4 Ապրիլ 1969 թ.

ՀԼԿՍՄ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.:

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 56—32—72, 2—68—16, 56—14—96։*

ՎՖ 05417: Պատվեր՝ 261: Տպաքանակ՝ 60000: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 8/IV. 1969 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.




Ոչ ոք այդպես էլ չիմացավ, թե ինչ էր պատահել Էլմիրային՝ ո՛չ Մարան տատիկը, ո՛չ ուսուցիչները և ո՛չ էլ դասընկերները: Հայտնի էր միայն, որ առաջինից մինչև իններորդ դասարանը գերազանցով սովորող, կենսուրախ բնավորությամբ Էլմիրա Գասպարյանը, ինչպես ասում էին՝ ամբողջ դասարանի աչքը, վերջերս փոխվել էր, մի տեսակ ինքնամփոփ, մտախոհ ու քչախոս դարձել: Իսկ որ առավել տարօրինակ էր, արդար քրտինքով վաստակած «հինգերը» աստիճանաբար «չորսեր» ու «երեքներ» էին դառնում:

— Այդ ի՞նչ է պատահել, Էլմի՛րա,— անհանգստացած հարցնում էին Մարան տատիկը, ուսուցիչներն ու ընկերները՝ բոլոր նրանք, ովքեր գիտեին նրան, և ում գիտեր ինքը՝ Էլմիրան: Նույնիսկ նրան թվում էր, որ միևնույն հարցն են տալիս փողոցում իր դեմ-դիմաց եկող մարդիկ: Եվ նրա սիրտն անասելի ցավից կծկըվում էր և հոգին տակնուվրա լինում:

Ասե՞լ, որ ինքն այլևս անկարող է առաջվա նման



պարապել, որ նույնիսկ մեկ էջ էլ չկարդացած՝ կատաղելապես հոգնում է, գլուխն անտանելիորեն ցավում է ու մտքերն իրար են խառնըվում: Ասե՞լ: Բայց չեն հավատա: Ծուլության, նույնիսկ ավելի վատ բաների կվերագրեն ու չեն հավատա:

Եվ նա լռում էր:

Առաջին մարդը, որն ինչ-որ բան կռահեց, հայոց լեզվի դասատուն էր՝ ընկեր Հակոբյանը:

«Ինչո՞ւ է աղջիկը կարդալիս քիթը գրքին կպցնելու աստիճան կռանում»,—մտածեց նա և առաջարկեց, որ աղջիկը դադարեցնի ընթերցանությունը:

«Նորից դժգոհ է»,—տագնապով մտածում է Էլմիրան ու, որպեսզի կսպի խեղդող արցունքները, գլուխն ափերի մեջ է առնում ու մտածում:

Ընդմիջմանն ընկեր Հակոբյանը կանչում է Էլմիրային, կարեկցանքով նայում նրա գունատ դեմքին ու քնքշորեն թևանցուկ անելով, տանում միջանցքով:

«Մի՞թե դիրեկտորի մոտ է տանում: Բայց ինչի՞ համար»... և Էլմիրան ամբողջ մարմնով դողում է:

Անխոս քայլում են ուսուցիչն ու աշակերտը մարդաշատ միջանցքով ու կանգնում բժշկի սենյակի փակ դռան առաջ:

— Զախորդությո՜ւն,— մրմնջում է ընկեր Հակոբյանն ու դառնալով Էլմիրային, ավելացնում.— Կարճատես ես, աղջիկս: Թվում է, կարճատես ես: Քեզ ակնոց է պետք, ակնոց: Դե ինչ, վաղն ակնաբույժի մոտ կգնաս, հասկացա՞ր, անպայման կգնաս:

# ԷՎՐԻԿԱ

ՄԿՐՏԻՉ ԴԱԼԼԱՔՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Էլմիրան թեթևացած շունչ է քաշում ու վազում դասարան:

«Որքա՜ն լավն է ընկեր Հակոբյանը, որքա՜ն հոգատար»,— տուն գնալու ամբողջ ճանապարհին մտածում էր նա: Եվ առաջին անգամ թեթևացած սրտով բարի գիշեր մաղթելով Մարան տատիկին, առանց դառը մտքերին անձնատուր լինելու, քնում է:

Ձեռքերը կրծքին ծալած նստել է Մարան տատիկն ու հայացքը սիրած թոռան դեմքին հառած, հապար ու մի բան է մտածում: Ահա նա քնի մեջ նրբորեն շարժում է շրթունքները, կարծես ինչ-որ մեկին գաղտնիք է շշնջում: Ու մեկ էլ բարձրաձայն ծիծաղում է, քրքջում ու ուրախաձայն բղավում.



— Է՜վրիկա, է՜վրիկա...

Անակնկալից գույնը գցած, Մարան տատիկը վեր է թռչում տեղից, սակայն տեսնելով խաղաղված թոռնիկին, նորից փլվում է աթոռին ու մրմնջում.

— Վա՜յ, քոռանամ ես, էս Էվրիկան ո՞վ է...

Հապար ու մի բան է մտածում Մարան տատիկն ու, գոգնոցի փեշով նորից մաքրելով թաց աչքերը, քայլում է դեպի իր մահճակալը:

Գարնանային ցողաթաթախ ծաղկի նման թարմացած արթնանում է Էլմիրան, լվացվում, սանրում մազերն ու նստում նախաճաշի: Էլ չի համբերում Մարան տատիկը, մոտենում է, շոյում թոռան մազերն ու հարցնում.

— Այդ ի՞նչ Էվրիկայի հետ էիր ամբողջ գիշեր փսփսում, աղջի՛կս: Չի՞ լինի բերես, մի մենք էլ տեսնենք դրա երեսը:

Էլմիրան մի պահ ապշահար նայում է տատիկին ու հանկարծ հիշում գիշերվա երազը:

...Պարապում է Էլմիրան ընկերուհու հետ, սակայն հայացքը գրքի տողերին հառելիս նորից հարություն են առնում անտանելի գլխացավերը և պտուտահողմի նման շարժվելով, ամեն ինչ խառնում նրա ուղեղում: Իսկ հետո գլուխն արճիճի նման ծանրանում է, կախվում կրծքին և ահավոր մամլիչի նման ճնշում սրտի վրա ու շնչահեղձ լինելու աստիճան խախտում շնչառությունը: Էլմիրան ջրից հանած ձկան նման թպրտում է, ճչում ու օգնություն աղերսում: Ու մեկ էլ հանկարծ ժպտալով հայտնվում է ընկեր Հակոբյանն ու նրան մեկնում ոսկեզօծ շրջանակով սիրուն ակնոցը.

— Փորձիր:

Էլմիրան փորձում է ու, ա՜յ քեզ հրաշք: Մաքուր երկնքի նման ամեն ինչ պարզվում է նրա աչքերի առաջ: Ամեն ինչ հստակորեն է տեսնում՝ տառերը, յուրաքանչյուր գիծ ու ստորակետ, նկարի ամեն մի նրբերանգ: Իսկ գլխացավ կարծես բոլորովին չի էլ եղել:

Ահա, թե որտեղ է թաքնված գաղտնիքը: Եվ ամեն ինչ մոռանալով, երջանկությունից արբեցած Էլմիրան բղավում է.

— Է՜վրիկա, է՜վրիկա:

Սթափվելով իրեն կլանող մտքերից, Էլմիրան վեր է թռչում տեղից, փաթաթվում տատիկի վզով, ամուր, շատ ամուր գրկում նրան, համբուրում ու գնդակի արագությամբ դուրս նետվում տնից:

— Դպրոցականի կարճատեսություն,— անկեղծայում գրում է ակնաբույժն ու նրան մեկնում ակնոց ստանալու դեղատոմսը:

Էլմիրան ստանում է ակնոցը:

Արդեն մեկ տարի է, ինչ ոսկե մեդալով դպրոցն ավարտած Էլմիրա Գասպարյանը իր երազած բժշկական ինստիտուտի ուսանողուհի է: Ու ամեն անգամ, երբ նա ակնոցավոր մարդ է տեսնում, անմիջապես իր այնքան սիրած, լավ ու բարի Մարան տատիկին է հիշում ու նրա միամտորեն ասած խոսքերը.

— Այդ ի՞նչ Էվրիկայի հետ էիր ամբողջ գիշեր փսփսում, աղջի՛կս: Չի՞ լինի բերես, մի մենք էլ տեսնենք դրա երեսը:





ՁԵՌՆԱԾՈՒ

ՀՈՎՍԵՓՅԱՆ ԱՐԹՈՒՐ
Երևան, 6 տ.



ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ԱՐԹՈՒՐ
Երևան, 6 տ.
(Պլաստիլինե ձեփվածք)



ՆԱԶԼՈՒԽԱՆՅԱՆ ՌՈԲԵՐՏ
Երևան, 5 տ.
(Պլաստիլինե ձեփվածք)



ԳԵՎՈՐԳՅԱՆ ԼԵՎՈՆ
Երևան

ՀՐԱՉՅԱ ՆԵՐՍԻՍՅԱՆԻ ԴԻՄԱՔԱՆԴԱԿԸ
(Պլաստիլինե ձեփվածք)